Շահինյան, Ա. (1968) *Մամիկոնյան—Համազասպյան տոհմը հյուսիսային Հայաստանում XII—XIII դարերում.* Լրաբեր Հասարակական Գիտությունների, № 3 . pp. 84-93.

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

# ՄԱՄԻԿՈՆՅԱՆ-ՀԱՄԱԶԱՍՊՅԱՆ ՏՈՀՄԸ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ XII—XIII ԴԱՐԵՐՈՒՄ

Միջնադարյան հայ խոշորագույն քաղաքական գործիչ և զորավարներ Զաքարե և Իվանե եղբայրները XII դարի վերջերին և XIII դարի սկզբներին, հարևան Վրաստանի օգնությամբ օտար զավթիչներից ազատագրեցին Հայաստանի զգալի մասը։

Զաքարյանների գլխավորությամբ կազմակերպված ռազմական այդ հաղթարշավներին մասնակցում էին նաև իրենց վասալ մի շարք անվանի հայ զորավարներ ու իշխաններ, որպիսիք էին Սյունյաց Օրբելյանները, «Մեծ սպարապետն Ռուբայն» (Սանահինի վանք, Հայրավանք։ Ստ. Օրբելյանը նրան անվանում է «դէդէ պուլ»), Խաղբակյան Խաղբակը, Վասակը, Վաչուտյան Վաչեն, Սարգիս Համազասպյանը և այլն։ Վերջինս ամենայն հավանականությամբ վերը նշված ժամանակամիջոցում ակտիվ կերպով մասնակցել է երկրում օտար զավթիչների դեմ մղվող ազատագրական կռիվներին, իսկ 1201 թվականին հերոսաբար զոհվելով պատերազմում՝ փառավորապես թաղվում է Սանահինի վանքում և նրա շիրմի վրա կանգնեցվում մի հոյակապ, բարձրարվեստ կոթողխաչքար։ Այս և մի շարք այլ կողմնակի հանգամանքներ խոսում են Սարգիս Համազասպյանցի իշխանական բարձր ծագման և որպես միջնադարյան Հայաստանի անվանի զորավարի ու քաղաքական խոշոր գործչի մասին։

Միջնադարյան հայ մատենագրական աղբյուրները, դժբախտաբար, անհրաժեշտ տեղեկություններ չեն հաղորդում Սարգիս Համազասպյանցի կյանքի ու գործունեության վերաբերյալ։ Այդ առթիվ նրա հիշատակին Սանահնում կանգնեցված կոթող-խաչքարի արձանագրության մեզ հաղորդած տեղեկությունները էլ խիստ անբավարար են ու կցկտուր։

1965 թվականին Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտի հայ վիմագրության սեկտորի հյուսիսային Հայաստանի շրջանները կազմակերպած հնագիտական արշավանքի ընթացքում (արշավախմբի ղեկավար, պատմական գիտությունների թեկնածու՝ Ս. Բարխուդարյան, որին մենք ևս մասնակցել ենք որպես վիմագիր և լուսանկարիչ) Մղարդ գյուղում հայտնաբերվեց Սարգիս Համազասպյանցի հիշատակին կանգնեցված երկրորդ արձանագիր խաչքարը, որի հետևանքով պարզվեցին նրա մահվան ժամանակին, ինչպես նաև նրա հարազատներին վերաբերող մի շարք լրացուցիչ և հետաքրքիր տվյալներ։

Այսպիսով, Սարգիս Համազասպյանցի կյանքի ու գործունեության վերաբերող տեղեկությունները մենք քաղում ենք նրա հիշատակին կանգնեցված երկու խաչքարերից և նրանց արձանագրություններից։ Դրանցից առաջինը կանգնեցված է Սանահնի վանքում 1215 թվականին, իսկ երկրորդը՝ Մղարդ գյուղում՝ 1201 թվականին։

Սանահնի վանքում Սարգիս Համազասպյանցի հիշատակին կանգնեցված խաչքարն առանց չափազանցության միջնադարյան Հայաստանի խաչքարային կոթողաշինության գլուխգործոցներից և այդ արվեստի դասական հաղվագյուտ օրինակներից մեկն է, կերտված կարմիր քարից, բազալտե ոճավորված պատվանդանի վրա։ Կոթողի ընդհանուր բարձրությունը 3,66 մ է, ընդ որում բուն խաչքարի բարձրությունը 2,78 մ է, լայնքը վերևում 1,36 մ, ներքևում 1,13 մ, հաստությունը 0,23 մ։

Խաչքարի վերևի ծայրերը հակառակ երեսից քիչ տաշել են այժմյան տեղում, այսինքն՝ Աստվածածին տաճարի գավթի արևմտյան արտաքին կամարներից մեկի տակ տեղադրելու նպատակով։ Այն կերտված է ճաշակով և կատարման բարձր արվեստով։ Նրա նրբագեղ քանդակներում գերիշխում են երկրաչափական մոտիվները, իսկ բուսական մոտիվներն այնքան են ոճավորված, որ մարդ դժվարանում է սահմանազատել բուսական մոտիվները՝ երկրաչափականից։ Խաչքարի արձանագրությունը հրատարակվել է բազմիցս, բայց առավել ստույգը պրոֆ. Կ. Ղաֆադարյանի[1] հրատարակածն է։

Խաչքարի քիվի վրա գրված է.

«ՆՇԱՆԴ ԱՅ ԱԻԳՆԵԱՅ ՍԱՐԳՍԻ ՅԱԻՈԻՐՆ ՄԵԾԻ», իսկ թիկունքի ընդարձակ արձանագրության մեջ նշված է.

«Ի ՈԿԴ (=1215 թ.) թվիս
Կանգնեցաւ խաչս յիշատակ
Սարգսի, որդոյ Սմբատայ, թոռ-
ն Համազասպեանց, որ մեռաւ ի
պատերազմի եւ թաղեցաւ ի դու-
ռն Ածածնիս եւ որդի նորա Սմբա-
տ եւ ամուսինն Աղուտ ետուն ի
Մղարդն զԱբլասադանց հայրեն-
իքն ամենայն շահ ու զենով յԱծ-
ածինս եւ խ(=40) ուրավար հող։ Ով
զայն հանէ յԱծածնէս Գ(=3) ս(ուր)բ ժող-
ովոյն նզովեսցի յԱ(ստուծո)յ։ Ես հայր
եւ վարդապետ Գրիգոր, Վարդան եւ
ամէն միաբանքս տուաք զամ-
էն եկեղեցիքս քառասնից
տաւնին զերկու եկեղեցին Սմպ-
ատայ եւ
զայլն Սարգսի։ Ով խափանէ զ-
վերադրեալ նզովսն առցեն»։

Այսպիսով խաչքարի արձանագրությունից պարզվում է, որ այն կանգնեցվել է Համազասպյանց թոռ, Սմբատի որդի Սարգսի հիշատակին, որը մեռել է պատերազմում և թաղվել Սանահնի վանքում։ Բացի այդ, Սարգսի կին Աղուտը և որդին Սմբատը այդ առթիվ կանգնեցնում են հիշյալ խաչքարը և Մղարդ գյուղից (որն հավանաբար Սարգիս Համազասպյանցի սեփականությունն էր)

[1] Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը և նրա արձանագրությունները, Երևան, 1957, էջ 174։

Սանահնի վանքին են նվիրում մի շարք կալվածներ, 40 օրավար հող և ստանում համապատասխան պատարագներ։ Ինչ խոսք, որ արձանագրության մեջ ընձեռած տվյալները աղոտ են ու թերի։ Նախ, որ նրանից չի իմացվում, թե երբ է Սարգիս մահացել, որովհետև վերը նշված արձանագրության 1215



Սանահնի վանք

*Ամիրսպասալար Սարգսի դամբարանում կանգնեցված խաչքար-կոթողը 1187 թ.*

*Դործ՝ քանդակագործ-վարպետ Փ. Յ. Ս-ի*

Թվականը խաչքարի կանգնեցման ժամանակն է ցույց տալիս միայն։ Այնուհետև, արձանագրության մեջ չի նշվում Սարգսի մյուս զավակների, նրա կնոջ Աղուտի տոհմաբանության և այլ մի շարք հարցերի մասին։

Ահա այս հարցերի լուսաբանումը տալիս է Մղարգ գյուղի վերոհիշյալ խաչքարն ու նրա արձանագրությունը։ Այն գտնվում է գյուղի բնակիչ Մամիջանյան Նիկալի տան բակում։ Կերտված է բազալտ քարից և կոչվում է «Սուրբ

*Սարգիս»։ Այս խաչքարի մոտ գտնվող ճարտարապետականորեն ձևավորված պատվանդանը չի պատկանում իրեն, քանի որ նրա վրա ընդհանրապես խաչքար չի դրվել (փոսիկ չունենալու պատճառով)։ Գյուղի բնակիչների պատմելով խաչքարն այստեղ բերվել է գյուղի հարավային մասից։*



Սանահնի վանք

*Սարգիս Համազասպյանց-Մամիկոնյանի հիշատակին կանգնեցված խաչքար-կոթողը 1215 թ*

*Խաչքարի քիվի վրա և խաչի հորիզոնական թևերի վերևի երկու կողմերում գրված է*

*«ԹԻԻՆ։ ՈԾ (=1201 թ.) եր.*
*Ս(ուր)բ Սարգի(ս)»*

*Նրա հակառակ երեսին և հարավային կողին փորագրված է հետևյալ խիստ ուշագրավ արձանագրությունը.*

Ես Աղուտս դուստ-
ր Նաջմադինին, ամուս-
ին Սարգսի եւ մայր
Մամնային
Ի նացա պակասմանն տո-
ւաք ի Սանահինն նաց-
ա հոգոյն զԱրլասադ-
անց ամեն շահ ու զենով
ու։ ԻԵ (25) աւրավար հող, հրամ-
անաւ Մեծին Զաքարիայի
եւ կամաւորութ(եամ)բ փեսայ-
ին իմ Միրիանայ եւ կնոջ
իւր րՌուզուքանա. զխաչս
կանգնեցաք, նզովաւք

փակեցաք, որ մարդ ի սացա (այնուհետև կարճ տողերով հարավային կողին) դուոն չգա զատի Սանահնին ծառաութենէ։ Ով զայս խափանէ յԱստուծո)յ և յԱ(ստուածածնես նզոված ե»։

Մղարդի այս արձանագրության շնորհիվ պարզվում է, որ Սարգիս Համազասպյանցը բացի Սմբատ որդուց, ունեցել է նաև երկու դուստրեր՝ Մամնան և Ռուզուքանը, որոնցից առաջինը մահացել է հոր մահվան ժամանակներում, իսկ երկրորդը ամուսնացած է եղել հավանաբար ազդեցիկ իշխան՝ Միրիանի հետ, որովհետև նշված հողերի Սանահնի վանքին նվիրման առթիվ բացի երկրի գլխավոր տեր՝ Զաքարե ամիրսպասալարից պահանջվող թույլատրությունից, հարկ է համարվել նաև ստանալ Միրիանի «կամավորությունը»։ Զաքարեն նման պատիվ և հրաման կարող էր տալ միայն իրեն մոտ և հավատարիմ ծառայած մարդկանց ու զորավարներին։

Հետաքրքիր է, որ Մղարդի խաչքարի արձանագրության մեջ, որը գրված է Աղուտի անունից՝ Սանահնի վանքին տրված բացի Արլասադանց կալվածքից նվիրված է և 25 օրավար հող, որը Սանահնի համանման արձանագրության մեջ դարձել է 40 օրավար։ Թե՛ մեկ և թե՛ մյուս խաչքարերի արձանագրության մեջ հողերը նվիրաբերված են նույն վայրում (Մղարդ), սակայն մի դեպքում նվիրատուն միայն Աղուտն է, մյուս դեպքում՝ Աղուտն ու իր որդին Սմբատը։ Ըստ երևույթին այս վերջինիս հաշվին էլ 25 օրավարի վրա ավելացվել է և 15 օրավար հող։

Մղարդի խաչքարը թվագրված է 1201 թվականով, որն անշուշտ վերաբերվում է նաև Սարգիս Համազասպյանցի մահվան թվականին, քանի որ արձանագրության մեջ ասված է «Թւին ։ ՈԾ ։ եր.... ի նացա պակասմանն» (իմա՝ Սարգսի մահվան)։ Զաքարյաններն այս ժամանակ ռազմական գործողություններ էին ծավալել Կոտայքում՝ Բջնիի ազատագրության համար[2]։ Սանահնի հիշյալ խաչքարի արձանագրության «մեռաւ ի պատերազմի» հատվածի հիման վրա, ամենայն հավանականությամբ, պետք է ենթադրել, որ Սարգիս Համազասպյանցը զոհվել է 1201 թվականին Բջնիի ազատագրության համար

2 Բջնին ազատագրվել է 1201 թվականին։ Տե՛ս «Հաւաքումն Պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, ի Վենետիկ», 1862, էջ 138 և «Անանուն ժամանակագրություն», Երևան, 1940, էջ 19։

տեղի ունեցող կռիվների միջոցին։ Եվ Զաքարե ամիրսպասալարի կարգադրու-թյամբ, կամ թույլտվությամբ նրան փառավորապես թաղել են Սանահնի վանքում «ի դուռն Աստուածածնին»։

1201 թվականին Սարգիս Համազասպյանցը մոտ 40—45 տարեկան կլի-ներ, որովհետև, ինչպես նշված է Մղարդի խաչքարի արձանագրության մեջ, նրա դուստր Ռուզուքանն արդեն ամուսնացել էր Միրիանի հետ, հետևաբար ամուսնացրած աղջիկ ուներ։ Կարելի է չտարակուսել, որ Սարգիս Համազասպ-



Հաղպատավանք

Ուքանանց տոհմի գամբարանը 1211—1220 թթ.

յանցը նախքան Բջնիի ազատագրումը մասնակցել էր նաև Արագածոտնի, Անբերդի, Անիի և Հայաստանի մի շարք այլ բնակավայրերի ազատագրական կռիվներին։

Որ Սարգիս Համազասպյանցը Զաքարյանների անվանի և սիրված քաջա-մարտիկ զորավարներից մեկն է եղել ապացուցում է այն փաստը, որ նրան թաղել են, այդ ժամանակ Զաքարյանների տոհմական հանգստարան հանդի-սացող, Սանահնի վանքում, որտեղ նախապես 1187 թվականին թաղված էր Զաքարե և Իվանե եղբայրների հայր՝ ամիրսպասալար Սարգիս Զաքարյանը՝

3 Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը... էջ 178—179։

և որտեղ 1212 թվականին թաղվեց նաև ինքը՝ ամիրսպասալար Զաքարեն[4]։ Բացի այդ, Սարգիս Համազասպյանցի մահից 14—15 տարի անց, նրա շիրմի վրա այնպիսի մի խաչքար-կոթող են կանգնեցվում, որն իր մոնումենտալությամբ ու շքեղությամբ նույնիսկ գերազանցում է ամիրսպասալար Սարգիս Զաքարյանի գեղաքանդակ համանման կոթողին, այն էլ Իվանե Զաքարյանի կենդանության օրոք։ Այս փաստը ևս խոսում է նրա նկատմամբ Զաքարյանների բարյացակամ և մտերմական հարաբերությունների մասին։ Վերջիններիս (որպես երկրի տերերի) Սարգիս Համազասպյանցի նկատմամբ ցուցաբերած նման հարգանքն ու վերաբերմունքը, միջնադարյան Հայաստանի պայմաններում, մեծագույն պատիվ պետք է համարել։ Եվ դա իրոք որ այդպես է։

Այստեղ ուշադրության արժանի է արտաքինից երկրորդական թվացող, բայց ուշագրավ և բոլորովին էլ ոչ պատահական մի հանգամանք ևս, որը նույնպես խոսում է վերոհիշյալ տեսակետի օգտին։ Դա այն է, որ Սարգիս Համազասպյանցի հիշատակին Սանահինում կանգնեցված սքանչելի խաչքարը կերտել է նույն այն մեծատաղանդ քանդակագործ վարպետը, որը և 1187 թվականին կերտել էր ամիրսպասալար Սարգսի գեղաքանդակ խաչքարը։

Վերոհիշյալ երկու խաչքարերի կոնստրուկտիվ ձևերի, համաչափությունների և մանավանդ դրանց քանդակային զարդաձևերի կատարման (երբեմն բառացի) առանձնահատկությունների համադրությունից պարզվում է, որ նրանք երկուսն էլ անվերապահ կերպով միևնույն վարպետի անմահ ձեռակերտն են հանդիսանում։ Սարգիս Համազասպյանցի խաչքարի արձանագրության մեջ չի նշված այն կերտող վարպետի անունը, սակայն, բարեբախտաբար, այն պահպանվել է ամիրսպասալար Սարգսի խաչքարի թիկունքի արձանագրության մեջ, որը կազմված է 3 տառերից՝ «Փ. Յ. Ս» ձևով։ Պրոֆ. Կ. Ղաֆադարյանի[5] կարծիքով դրանք խաչքարի արձանագրությունը փորագրող և այն կազմող վարպետի անվան սկզբնագրերն են՝ անունը, հայրանունը և որտեղացի լինելը։ Վերոհիշյալ հանգամանքներից ելնելով կասկածից դուրս է, որ Սարգիս Համազասպյանցի խաչքարի կերտողն էլ նույն վարպետ «Փ. Յ. Ս»-ն է, որն առայժմ դեռ չի հաջողվում վերծանել։ Որ «Փ. Յ. Ս»-ն ամիրսպասալար Սարգիս Զաքարյանի և Սարգիս Համազասպյանցի (և մի շարք այլ խաչքարերի) քանդակագործ-վարպետի անունն է արտահայտում՝ հաստատվում է խաչքարեր կերտող մեկ այլ վարպետի նմանօրինակ ստորագրության մոտավոր ձևով։

Ստեփանավանի շրջանի Ագարակ գյուղի արևելյան կողմում, ճանապարհի եզրին գտնվում է համեստ, բազալտ քարից կերտված, 1268 թվակիր ոչ մեծ մի խաչքար, որի թիկունքի 9 տողանի արձանագրության անմիջապես վերջում առանձին կետերի մեջ գրված է այն քանդակող վարպետի անունը «Փ. Յ» ձևով, որն հարկավ Փ-ով սկսվող վարպետի անունն է արտահայտում։ Թե ի՞նչ կապ ունեն Սանահինում և Ագարակում խաչքարեր կերտած վարպետներ «Փ. Յ. Ս»-ն և «ՓՅ»-ն՝ առայժմ ոչինչ ասել չենք կարող, բայց որ այդ երկուսն էլ միջնադարյան հայ քանդակագործ վարպետների անունների սկզբնագրերն են և կամ անունները՝ այդ արդեն անվիճելի է։

---

[4] Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, Երևան, 1961, էջ 186, «Անանուն ժամանակագրություն», էջ 19։

[5] Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը...., էջ 179։

*Այսպիսով, ի մի բերելով վերոհիշյալը, հանգում ենք այն եզրակացության, որ հայ միջնադարյան տաղանդավոր քանդակագործ-վարպետ «Փ. Յ. Ս.»-ն կերտել է և՛ ամիրսպասալար Սարգիս Զաքարյանի և՛ Սարգիս Համազասպյանցի աննման և գողտրիկ խաչքարերը։*

*Մղարդի հիշյալ խաչքարի արձանագրությունից պարզվում է նաև, որ Սարգիս Համազասպյանցի ամուսին Աղուտը՝ Ուքանանց տոհմից, Ուքանի թոռ և Սմբատի որդի, անվանի իշխան և քաղաքական գործիչ՝ Նաջմադինի դուստրն է։ Նաջմադինը, ինչպես ինքն է գրում, Հաղբատավանքում իրենց տոհմական եռախորան դամբարանի խաչքարերից մեկի արձանագրության մեջ՝ վրաց Գեորգի և Թամար թագուհուն «մեծ ծառայություններ մատուցած» անձնավորություն էր, որն իր այդ ծառայությունների դիմաց նրանցից ստացել էր Ծոբի գյուղը (այժմ Վրաստանի սահմաններում) հատուկ հրովարտակով[6] (սիգել)։ Հիշյալ արձանագրության մեջ Նաջմադինը իր հերթին Զաքարեի, Շահնշահի և Իվանեի աշխատության համար Հաղբատավանքին նվիրել էր Ծոբ գյուղից Զաքեոնք շինականը և Կեչևնուտի այգին։ Ինչպես վկայում է Կ. Գանձակեցին[7]՝ Ուքանանց տոհմի ներկայացուցիչները վրաց արքունիքի գործակալներն էին և ինչպես դժվար չէ ենթադրել, նրանք միաժամանակ Զաքարյանների վասալներն էին հանդիսանում։*

*Պրոֆ. Կ. Ղաֆադարյանը[8] կազմել է Ուքանանց տոհմի ճյուղագրումը։*

*Այս բոլորից պարզվում է, որ Ուքանանց իշխանական տունը ազգակցական-խնամիական կապեր ուներ Համազասպյանց տոհմի հետ (ինչպես տեսանք վերևում՝ Նաջմադինի դուստր Աղուտը Սարգիս Համազասպյանցի կինն էր, որոնք «յազգէ Մամիկոնեան» էին)։*

*Համազասպյանց տոհմի ավագը համարվում է Համազասպյան Մարծպանը։ Նրա որդին Սմբատն է, որի ղավակները՝ Քուրդը (ամենայն հավանականությամբ սա նույն այն Քուրդ իշխանն է, որի կնոջ՝ Խորիշահի և նրա զավակների հիշատակին Սանահնի վանքում մի հոյակապ խաչքար է կանգնեցված), Հասանը, Համազասպ և Սարգիսը 1191 թ. Սանահնի վանքին նվիրում են Մանթաշի կեսը և Տայքում իրենց ունեցած հողը[9]։ Իսկ Տայքը, ինչպես գիտենք ի սկզբանէ անտի, Մամիկոնյանների հայրենական կալվածքն էր, հետևաբար Համազասպյանները Մամիկոնյանց տոհմից էին, ինչպես այդ մասին պարզորոշ կերպով նշված է նաև Համազասպյան Մարծպանի և Համլիկի (1221 և 1239 թթ.) Դսեղի (այժմ Թումանյան) Բարձրաքաշ ս. Գրիգոր վանքում թողած վիմական արձանագրություններում։*

*Մատենագրական և վիմական աղբյուրներից պարզվում է, որ Մամիկոնյան-Համազասպյան իշխանական տան ներկայացուցիչները XII—XIII դարերում լայնորեն ճյուղավորվում են Հյուսիսային Հայաստանում և Զաքարյանների գլխավորությամբ ակտիվ կերպով մասնակցելով երկրում ծավալված ազատագրական պայքարին՝ վերջիններից ստանում են մեծամեծ կալվածքներ և գյուղեր (Մղարդ, Դսեղ, Կարմիր քար, Կկուաշեն, Ծաղկուտ, Ազադակ (այժմ Իդատակ) և այլն)։*

---

6 Կ. Ղաֆադարյան, Հաղբատ, Երևան, 1963, էջ 230—1։

7 Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, Երևան, 1961, էջ 98։

8 Կ. Ղաֆադարյան, Հաղբատ, էջ 72։

9 Նույն տեղում, էջ 105—6։

Համազասպյան-Մամիկոնյան իշխանական տան ճյուղագրություններ 12-13 դդ






*Հավանաբար Սարգիս Համազասպյանին էր պատկանում Մզարդը և շրջակա հողերը։*

*Համազասպյանների մյուս ճյուղը Դսեղում մեծ կալվածքներ է ձեռք բերում, իսկ Բարձրաքաշ ս. Գրիգոր վանքն էլ դառնում է նրանց հոգևոր և տոհմական կենտրոնը։*

*Նրանց մեկ ուրիշ ճյուղը ընդարձակ կալվածներ է ձեռք բերում Վեդու վերին ակունքներում (Տ. Հովսեփյան)։*

*Եվ այսպես Մամիկոնյան-Համազասպյանները XII—XIII դարերում սկսում են աստիճանաբար զորեղանալ։*

*Ինչպես նկատեցինք վերևում՝ Համազասպյանները մյուս կողմից խնամիական կապերի մեջ են մտնում Ուքանանց իշխանական տոհմի հետ, իսկ Զաքարյանները, ոչ առանց պատճառի, առատաձեռն վարձատրում ու մեծ պատիվների են արժանացնում նրանց։*

*Այսպիսով, մեզ հետաքրքրող խաչքարերի արձանագրությունների ուսումնասիրությունը որոշակի կերպով ընդարձակում է Զաքարյան իշխանների և նրանց ենթակա ու նրանց հետ սերտորեն կապված հայ իշխանական տոհմերի փոխհարաբերությունները, հատկապես Մամիկոնյան-Համազասպյանների և Ուքանանց տոհմերի միջև։*

*Սանահնի և Դսեղի արձանագրությունների հիման վրա կազմել ենք Համազասպյան-Մամիկոնյան տոհմի հոդվածում տպագրվող մոտավոր ճյուղագրությունը*[10]*։*

---

10 *Այն գծագրել է ճարտարապետ Գրիգոր Քոչոյանը, որի համար մեր շնորհակալությունն ենք հայտնում։*